րանսան համաձայնեցան Սուէզի միջազգայնացման ծրագրին շուրջ, որուն մանրամասնութիւնները փոխանցուեցան Լոնտոնի ժողովին հրաւիրուած պետութիւններուն։

× Մ. Նահանգներու նախկին նախագահը, Թրուման, յայտնեց թէ 1945ին առաջարկած էր որ Փանամայի Ջրանցքը միջազգայնացուի, բայց այն ժամանակ «Ռուսերը միայն ժխտական պատասխան տուին»։

## ՆԱՍՐԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Յարդ. յայտնի չէ թէ ի՞նչ պիտի ըլլայ Նասրի պատասխանը։ Եգիպտոսի նախագահը կը վարանի, որովհետեւ իր կառավարութեան անդամներն իսկ հակասական խորհուրդներ կուտան իրեն։ Ոմանք կը վախնան անգլեւֆրանսական զինուորական միջամտութենէն. ուրիշներ ընդհակառակն, այս միջամտութեան վրայ յոյս դրած են՝ արաբական աշխարհը Արեւմուտքի դէմ ցցելու համար։

× Գահիրէէն հասած պաշտօնական դեկոյցը կը յայտնէ թէ զնդ. Նասր «անորոշ ժամանակով յետաձգեց դէպի Մոսկուա կատարելիք իր ճամբորդութիւնը»։

## ՍՈՒԷԶԸ ԵՒ ԱՐԱԲԱԿԱՆ ԵՐԿԻՐՆԵՐԸ

Արաբական երկիրները կը սպառնան կարել նաւթուղիներն ու արգելքի տակ առնել դէպի արեւմուտք ուղարկուած քարիւղը, եթէ Անգլիան եւ Ֆրանսան զինուորական գործողութեանց սկսին Եգիպտոսի դէմ։

Արդէն իսկ ծրագիր կար, որ համարաբական քարիւղի խորհրդաժողով մը կը հրաւիրուի Դեկտեմբերի սկիզբը՝ արաբական քարիւղի շահագործման, փոխադրութեան եւ վաճառման հարցերուն մասին ընդհանուր ուղեգիծ մը պատրաստելու նպատակով։ Բայց Ասուանի ամբարտակին եւ Սուէզի հարցերը պատճառ եղան որ դէպքերը դահավէժ ընթացք մը առնեն։ Եգիպտական Ալ Շաապ թերթը իր երէկուան թիւին մէջ կ՚արձարարէր.— «Եթէ ձեռք տաք Սուէզի Ջրանցքին, Միջին Արեւելքի ամբողջ քարիւղը պիտի կորսնցնէք»։

× Սուրիոյ վարչապետն ու արտաքին նախարարը պիտի այցելեն արաբական բոլոր մայրաքաղաքները՝ Եգիպտոսի ի նպաստ քարոզչական շրջապտոյտի մը համար։ Առաջին հանգրուանը Պաղտատն էր, ուր հասան հինգշաբթի օր։

× Այս միջոցիս Հիթլէր ի պատուի է։ Մինչ Անգլիացիներն ու Ֆրանսացիները զնդ. Նասրը կը նմանցնեն Հիթլէրի, արաբական եւ եգիպտական թերթերն ալ կը գրեն թէ Իտըն կ՚ուզէ երկրորդ Հիթլէր մը դառնալ։

## ԿԱՑՈՒԹԻՒՆԸ ՀԻՒՍ. ԱՓՐԻԿԷԻ ՄԷՋ

Կոնստանտինի շրջանին մէջ, ահաբեկիչները բնաջինջ ըրին բազմաթիւ մահմետական ընտանիքներ։ Ապահովութեան ուժերը օգնութեան փութացին եւ վիրաւորները փոխադրեցին դէպի մօտակայ հիւանդանոցները։

× Քապիլիոյ լեռնային շրջաններէն հաւաքուած 8000 Ալժերիացիներ Ֆրանսայի ի նպաստ ցոյց մը կազմակերպեցին։

× Թունուզի մէջ բազմակնութիւնը արգիլուեցաւ։ Վարչապետ Հապիպ Պուրկիպա ընկերային բարեփոխութեանց հրամանագրեր ստորագրեց, բայց Սուէզի հարցին մասին լուռ կը մնայ։

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

900 ՄԵԹՐ խորութեան մէջ արգելափակուած 261 հանքագործները ազատելու յոյսերը շատ քիչ են։ Թերեւս փրկուին ամէնէն աւելի դիմադրական ուժ ունեցողները, որովհետեւ մաքուր օդի հոսանք մը շրջան կ՚ընէ այն ստորերկրեայ անցքին մէջ, ուր համախմբուած են արկածեալները։

ԻՏԱԼԱԿԱՆ մամուլը բուռն յօդուածներ կը հրատարակէ ածխահանքին վարչութեան դէմ։ Կ՚ըսէ թէ Պելժիոյ մէջ աշխատող օտար հանքագործներուն ապահովութեան համար ձեռք առնուած միջոցները անբաւարար են։

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ նախկին Ռազմիկներու Միութենէն պատգամաւորութիւն մը ներկայանալով Աթէնքի եգիպտական դեսպանատունը, պատրաստակամութիւն յայտնեց կռուելու Եգիպտոսի համար, եթէ պատերազմ ծագի Սուէզի Ջրանցքին ազգայնացման համար։

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ ՆԻՍԻ ՄԷՋ

Խանասորի արշաւանքի 59րդ տարեդարձին առթիւ։

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նիսի Գէորգ Չաւուշ խումբին կողմէ, հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի։

Կիրակի, Օգոստ. 19ին, ամբողջ օրը, Լա Բօլ սիւր Լուի գետեզերեայ գեղեցիկ անտառին մէջ։ Պատուոյ նախագահութեամբ ընկ. Ս. ՎԱՀԱՆԵԱՆԻ (Քանէն)։ Կը նախագահէ ընկ. ԳԱՐԵԳԻՆ ԳԷՈՐԳԵԱՆ։ Կը խօսի Տիկին ՏԻՐՈՒՀԻ ՄԻՍԱՔԵԱՆ։ Գեղարուեստական ճոխ բաժին։

ԾԱՆՕԹ.— Մասնաւոր օթօքարը կը մեկնի Փլաս Մասէնայէն ժամը 9ին, կը հաղնիպի Մաըլէնի Հայոց եկեղեցին։ Անոնք որոնք չեն կրնար առնել այդ օթօքարը, կառ ա'Օթօպիւսէն ժամը անգամ մը օթօպիւս մը կը մեկնի դէպի Լա Բօլ Սիւր Լու եւ անոնք որոնք կառքով կուգան, Լա Բօլ չհասած Ռութ Վէր Կռոսս առնել եւ մինչեւ Պաքիւսի արճարանը երթալ, իսկ ուրիշ միջոցներով եկողները հեռաձայնել Լա Բօլէն 53 թիւը, կառքերով կ՚առնենք զիրենք։ Ճոխ պիւֆէ։

## ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ ՏՕՆԸ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Ս. Աստուածածնայ Վերափոխման տօնին առթիւ, այս կիրակի, Փարիզի Ս. Յովհաննէս-Մկրտիչ եկեղեցիին մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր պատարագ եւ յաւարտ պատարագի պիտի կատարուի խաղողի օրհնութիւն։

Երկուշաբթի Մեռելոց, Ս. պատարագ, ժամը 10ին։

Հաստարակութենէն կը խնդրուի ներկայ ըլլալ։

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

15 Օգոստոս, չորեքշաբթի առաւօտ, Աստուածածնայ տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի, Ռիւ ժէ Սէն Լուի սրահին մէջ։

Պիտի պատարագէ Թորգոմ քահանայ (Լիոնէն)։ Երգեցողութեանց պիտի մասնակցի Օր. Սիրան Տէր Կոմսեան։

### ԼԱՍԻՈԹԱՅԻ ՄԷՋ

Ս. Կարապետ եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ յառաջիկայ օգոստոս 14ին ոչխարի մատաղ եւ աղի օրհնութիւն պիտի կատարուի իրիկուան ժամը 6ին։ Իսկ օգոստոս 15ի առաւօտ, ժամը 8ին Ս. պատարագ, հոգեհանգիստ եւ խաղողի օրհնութիւն պիտի կատարուի։ Եկեղեցի կը հրաւիրուի բարեպաշտ ժողովուրդը։

### ԱՌՆՈՒՎԻԼԻ ՄԷՋ

Պատարագ եւ խաղողի օրհնութիւն այս կիրակի առաւօտ, Վարագայ Ս. Խաչ եկեղեցիին մէջ, ժամը 10ին։

### ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Այս կիրակի։ Սկիզբ ժամերգութեան ժամը 8ին, պատարագ եւ խաղողի օրհնութիւն ժամը 10ին, Շաւիլի մատրան մէջ։ Երկուշաբթի՝ Մեռելոց։





Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)





ՕՐ. ՀԵՐՄԻՆԷ ՄԽՃԵԱՆ
Պ. ՀԱՅԿԱԶ ՔԷՍԷՐԵԱՆ
Ամուսնացած

Կնքահայրութեամբ Տէր եւ Տիկին Կ. Քէսէրեանի։

Փարիզ, 29 Յուլիս 1956

★

Տէր եւ Տիկին Մխճեան իրենց աղջկան ամուսնութեան առթիւ հետեւեալ նուէրները կ՚ընեն.— 2000 Ֆր. Այնճարի «Յառաջ» վարժարանին, 2000 Ֆր. Կապոյտ Խաչի Պանեօ-Բաշանի մանաճիւղին եւ 1000 Ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ԷՔՍ–ԼԷ–ՊԷՆԻ ՄԷՋ

Այս տարի եւս Օգոստ. 19ին, ժամը 9-21, տեղի պիտի ունենայ դաշտահանդէս մը, հովանաւորութեամբ ՍԵՐՈՎԲԷ ԵՊ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ, Օ Փիէ տիւ Թէլէֆէրիքի մէջ։ Հանդէսը կը սկսի պատարագով։ Պատարագիչ Տ. Թովմաս քհյ։ Բանախօսութիւն, երգ եւ արտասանութիւն կէսօրէ ետք։ Նոյնքան հաճելի ժամանց, ինչպէս անցեալ տարի։ Հասոյթը պիտի յատկացուի նոր կազմուած կիրակնօրեայ դպրոցին։

